ԳՐԻԳ ՔՀՆ. ԵՂԱՆԵԱՆՑ



# ԿԱՐՆՈՅ ԳԱՂԹԸ

(1829—1830)

(Արտատպած «Արձագանք» շաբաթաթերթից)

---




ԹԻՖԼԻԶ
ՅՈՎՀԱՆ. ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ ՏՊԱՐԱՆ,
ՕՐԲԵԼԵԱՆ ՓՈՂՈՑ, № 1, 2
1891

ԳԻՒՏ ՔՀՆ. ԱՂԱՆԵԱՆՑ



# ԿԱՐՆՈՅ ԳԱՂԹԸ

(1829—1830)

(արտատպած «Արձագանք» շաբաթաթերթից)

—o—

ԹԻՖԼԻԶ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆՑԻ ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՒԱՆԵԱՆ ՓՈՂՈՑ, № 1, 2.
1891

# ԿԱՐՆՈՅ ԳԱՂԹԸ

---

Գաղթականութեան խնդիրը վերջին ժամանակներում այնպէս զբաղեցնում է մեր բանասէրներին, որ ես աւելորդ չեմ համարում հրատարակել մի ամփոփ նկարագիր 1829—30 թուերին Կարինից և նորա շրջակայքից Ռուսաց Հայաստանի Տայոց աշխարհը չուող հայ գաղթականութեան մանրամասն անցքերի, քաղելով ինձ մօտ գտնուած գրչագիր յիշատակարաններից և պատմական անցքերից։

---

Այն ինչ ռուսաց զօրքերի քաջութիւնը յաղթող էր հանդիսանում Օսմանեանց վերայ, և արևելքից ու արևմտքից՝ Ելլադայի կողմերից զօրանում էր պատերազմի ձայնը և սարսափեցնում հագարացւոց ամբողջ տէրութիւնը և ռուսաց դրօշները Կարսը, Ախալցխան և Բայազիդը տիրելուց յետոյ՝ Պասկեւիչի առաջնորդութեամբ երևեցան

Կարին քաղաքի պարսպի աշտարակների գլխներին, այս անուանի երկրների հայ բնակիչները համարում էին իրանց փոխադրուած հայրենի իշխանութեան նախնի վիճակի մէջ. բայց ժամանակի բերմունքն արդելք եղաւ նոցա սրտերի կատարեալ ուրախութեան, երբ հանդէս եկաւ այդ երկու տէրութեան մէջ հաշտութեան և պայմանագրութեան հրամանը. որովհետև այդ նորանուաճ գաւառները, բացի Ախալցխա քաղաքից, թողնում էր օսմանցոց տիրապետութեան. հայերին մխիթարեց դաշնագրութեան մի կէտ, որով այդ գաւառների բոլոր բնակիչներին ազատութիւն էր շնորհւում, ով կամենար կը մնար, ով չէ՝ կարող էր գաղթել Հայաստանի այլ կողմերը ռուսաց իշխանութեան ներքոյ։

Այնուհետև ամեն կողմերի հայերի գըլխաւորները մտածեցին, որ թէ հայերը և թէ նոցանից հեռաւոր հայ-կաթոլիկներն անկարող էին այլ ևս Օսմանեան տէրու-

թեան ծանր լծի տակ մնալ, ուստի յօժար կամքով յանձնառու եղան թողնել իրանց հայրենի բնակութեան տեղերը և անցնել քրիստոնեայ իշխանութեան հովանաւորութեան տակ, բարւոք համարելով ժամանակաւոր վիշտն ու նեղութիւնը միանգամ տանել և ապա աներկիւղ ապահովութիւն ու հանգիստ վայելել։ Ուստի Կարին քաղաքի առաջնորդ Կարապետ արքեպիսկոպոսը խնդիր տուեց գլխաւոր սպարապետին հրաման տալու, որպէսզի ժողովուրդը գաղթէ ռուսաց կայսերութեան սահմանները. Նոյնպիսի խնդիր տուին նաև կաթոլիկ հայերը իրանց վարդապետի ձեռքով։ Կարնեցիների թիւը 3000 տուն էր, իսկ կաթոլիկներինը 300, բացի գիւղացիներից։ Չորս օրից յետոյ սպարապետը հրաւունք տուեց, որ ցանկացողները կարող են գաղթել և պատուիրեց միանգամայն, որ ամենքը միասին չշտապեն, որպէսզի ցրտից առանց օթևանի չնեղանան, այլ քիչ քիչ գաղթեն,

քանի որ ռուսաց զօրքը դեռ ութն ամիս մնալու է այնտեղ։

Կամաւոր չարչարանքի յանձնառութիւնը ծանր վշտերի նախատեսութեամբ, որը կասկածելի էր, թեթևացրեց ժողովրդի ամեն նեղութիւնները, որոնք յօժարութեամբ իւրեանց կահկարասին չնչին գնով ծախեցին, հարուստները ճանապարհ ընկնելու, իսկ աղքատները փոքր ինչ առձեռն փող ունենալու համար։ Եւ այսպէս 1829 թուի հոկտեմբերի 14-ին թողին իրանց հայրենիքն և սկսան քաղաքից հեռանալ— կաթոլիկներից աւելի հարուստ ու անուանիքը, իսկ հայերից մի քանի խեղճեր։ Եւ շատ յաջող եղաւ առաջին անգամ գաղթող յիսունաչափ տների կարաւանի բաղդը, որովհետև ճանապարհին նոցա պատահեց սպարապետը, որ Թիֆլիզ էր վերադառնում, և մի գունդ զօրք դրեց նոցա հետ պահպանութեան համար, որ մինչև Կարս հասցնեն։ Կաթոլիկները Կարսից Լօռի անցան՝

Ճահնադար, Մօլլասուլէյման, Ղարաքիլի-սէ և Սարչապետ գիւղերը ձմեռն այնտեղ իրանց կրօնակիցների հետ անցկացնելու. Իսկ հայերին անհրաժեշտ թուեցաւ Ղարս մնալ, մինչև տեսնեն թէ վերջը ինչ է լինելու: Այս գաղթողներից իւրաքանչիւր տանուտէր իւր ընտանիքն ուղարկելով իրանք Արզրում մնացին, մինչև իրանց ապրուստը (շահալածառ) կվերջացնէին, որի մասին մեծ գործ կատարեց ոստիկա-նութիւնը, որ այդ ութն ամսուայ ըն-թացքում կարելոյն չափ թեթևացրեց քրիստոնեաներին պարտքերից և պահանջ-ներից, որպէսզի անարգել կարողանան ռուսաց սահմանին անցնել:

Յիշեալ խմբի գնալուց յետ՝ ձմեռուայ խստութիւնը հասնելուն պէս դադարեցին ճանապարհորդութիւնները, և ամենայն մարդ սկսաւ հանդարտ մտածել տեղափո-խութեան տեղերի ու հանգամանքների մասին, գրեթէ բոլոր ժողովուրդը, քաղա-

քացիք և գիւղացիք իրանց անունները արձանագրել տուին Բանդրատև զօրավարին և նա Հայերին ու կաթոլիկներին ցոյց տուեց գլխաւոր սպարապետի ուղարկած թղթի պատճէնը, որի մէջ նշանակուած էր այն տեղերի անունները, ուր կարելի էր ժողովրդին փոխադրել. և առաջարկեց ազատ կերպով ընտրել որն էլ կամենան։ Կարապետ արքեպիսկոպոսը իւր 38 պատուաւոր ազգայիններով ստորագրութեամբ խնդրեց Ախալցխան, նոյնպէս կաթոլիկներն էլ բազմիցս խորհուրդ անելով ընտրեցին իրանց համազգիներից չբաժանուիլ, և յօժարեցան Ախալցխա տեղափոխուել, որպէս զի փոքրաթիւ լինելով օտարութեան մէջ չդժուարանան ապրել, մանաւանդ որ կրօնի խտրութիւնը ամենևին չէ վնասում «քաղաքական բարեզարդութեանց». և նոցա վարդապետները այս բանը յայտնեցին Բանդրատև գեներալին։ Այդ ժամանակ Բանդրատևը մարդ ուղարկեց

Ախալցխայի հրամանատար Տրեշեր փոխ գնդապետի մօտ, հարցնելու թէ քաղաքում ո՞րքան տեղ կայ բնակութեան համար. որովհետև քաղաքը երեք անգամ աւերուած էր, առաջինը՝ երբ ռուսները սաստիկ պատերազմով քաղաքն առան, երկրորդ՝ Աջարացու կողոպտելու ժամանակ, երբ քաղաքը հիմնայատակ եղաւ, և երրորդ՝ ժանտախտի ժամանակ, երբ ռուսը այն ամեն տները, ուր որ հիւանդութիւնը բուն էր դրել, կարասիքով հրոյ ճարակ տուեց, որպէս զի ցաւի սերմը ջնջէ։ Նոյնպէս Կարապետ արքեպիսկոպոսն էլ երեք մարդ ուղարկեց զննելու քաղաքի և շրջակայ գաւառների գիւղերը։ Ուղարկած դեսպանները յետ դարձան, և բարի համբաւ բերին տեղի մասին, տեղի գրութեան նկարներով, որը տեսան Բանգրատունի մօտ և շատ գովասանքներ լսեցին ցանկացած տեղի մասին. շուտով Բանգրատեւք հրատարակեց Հայոց ազգի ամեն մէ

գաստակարգի մէջ, որ գարնան բացուելուն պէտ պատրաստ լինին ճանապարհ ընկնելու։

Մինչդեռ կարնեցիք պատրաստութիւն տեսնելու եռւելիցն էին, անհոգ չէին նաև կարսցիք ու բայազիդցիք, որովհետև կարսցիք իրանց ինդրի համեմատ ստացան Փամբակն ու Շօրագեալը, և բայազիդցիք Գեղարքունւոյ կողմերը իւր շըրջականերովը, ինչքան որ բաւական կըլինէր նոցա իրանց խաշներով. և քան հազար ոսկի արքունիքից փոխ առան առանց տոկոսիքի հինգ տարուայ ընթացքում հատուցանելու պայմանով։ Իսկ յոյները, որոնք Հայաստանի զանազան գաւառներում ցրուած էին վեց հարիւր տան չափ՝ Ծալկան ստացան։ Որովհետև գիւմիւշխանցի եօթանասուն տուն յոյներ Պասկևիչի արշաւանքների ժամանակ եկան անցան Վրաստան և նոցա գլխաւորին, որի անունն էր Թօղօրի, յանձնուեցաւ բնակութեան տեղ պատրաստել ամ-

բողջ լոյն գաղթականութեան համար ուր և կամենայ Վրաստանի մէջ. և Արզրումի մէջ մի զգօն վաճառական Եանի անունով և նոցա աւագերէցը գործի նախաձեռնութիւնը յանձն առան. իսկ բոլոր նոցա ժողովուրդը յօժարութեամբ ընդունում էին, ինչ որ նոքա որոշում էին ու հրամայում։

Գաթոլիկի ժողովրդի մէջ մի փոքր տարաձայնութիւն ծագեցաւ ոչ թէ մնալու կամ գնալու խնդրի համար, վասնզի արդէն վաղուց նոցա յօժարութիւնը յայտնի էր, և այդ թողուած էր ամենքի ազատ կամքին, այլ տեղի ընտրութեան համար։ Որովհետև երբ Արզրումի բազմութիւնը Ախալցխան ընտրեց որպէս բնակութեան յարմարագոյն տեղի, նոքա, որոնք նոցանից վաղօրօք գաղթել էին և դեռ Լոռի էին, պնդում էին, որ այնտեղ իսկ հիմնեն իրանց բնակութիւնը։ Եւ երկար նամակագրութիւններից յետոյ երկու կողմից էլ, վերջը նոքա սկսան գնել զանազան

երկիրները՝ Լօռին, Ձօրագեալը և Փամբակը. ընտրեցին Փամբակի Ղարաքիլիսէ աւանը Կարսեցիների հետ այնտեղ բնակուելու և գնալով Թիֆլիզ՝ բոլոր Կարնեցի կաթոլիկների անունով խնդրեր տուին կառավարութեան Ղարաքիլիսէն իրանց տալու և պատասխան ստացան, թէ կարնեցիներին տրուել է Ախալցխան, իսկ դուք եթէ կամենում էք կարող էք Փամբակ գնալ։ Այն ժամանակ գրեցին նոքա իրանց վարդապետին և ժողովրդին և յորդորեցին, որ իրանց հետ Փամբակ գնան. իսկ նոքա պատասխանեցին, թէ տէրութեան տուած խոստումից յետ անկարելի է իրերի փոփոխութիւնը։ Երբ նոցա որսալու յոյսը կտրեցին՝ կէսը նոցանից Ախալցխան ընտրեց և միւս կէսը մնաց տեղն ու տեղը տատանման մէջ։

Այսուամենայնիւ, որովհետև դժուար էր հայրենի տունը և բնակութիւնը թողնել, մանաւանդ աղքատների համար, և

շատերը ցանկութիւն ունէին, որ ռուսները չթողնէին օսմանցւոց գաւառները։ և առհասարակ ռամիկները, որ անծանօթ էին քաղաքականութեան օրէնքներին՝ չէին հաւատում հաշտութեան և յետ դառնալու խօսքերին, և սնոտի խօսքերին հաւատ ընծայելով պնդում էին թէ պատերազմը պէտք է նորոգուի ու ռուսը Արզրումից չպէտք է հեռանայ, որի համար մեծ աշխատութիւն պէտք եղաւ ամենքի խորհուրդը հաշտեցնելու և միևնոյն կէտի կանգնեցնելու ամենքին. միայն թէ ամէն մէկի կամքին թողնուեցաւ գնալը կամ մնալը, երկու դրութիւնն էլ պատկերացնելով նոցա առաջ, այն է թէ՝ օսմանցւոց իշխանութեան տակ մնալու համար՝ յիշեցէք այնքան դարեր կրած տառապանքները, իսկ գնացողները թող 'ի նկատի ունենան և յանձն առնեն ըսկզբում բազմադիմի նեղութիւններ, իսկ ապա մշտապէս անդորր խաղաղութիւն։

բաստ սայլերը բաւական չէին բոլոր ժողովրդին տանելու, հրամայուեցաւ, որ վարձաւոր սայլերը ժողովրդին տանեն մինչև Կարս, Թողնեն այնտեղ ու իրանք յետ դառնան մնացեալներին տանելու։ Սայլերը հասան Կարս, և որովհետև ժողովուրդը չէր սպասում սայլերի գալուն՝ սայլերը ցրւում էին իւրաքանչիւրն այս ու այն կողմ և ժողովուրդը ստիպուած էր մնալ գետնին. որա հետևանքն այն եղաւ, որ ժողովուրդը ծանր աղքատութեան ենթարկուեցաւ։ Այլ այս ամեն պատրաստութիւնները կարգի գցելու համար մինչև որ քաղաքը բոլորովին կդատարկուէր, հայոց արքեպիսկոպոսը և կաթոլիկների վարդապետը ստիպուած էին Քանդրատևի հետ գրեթէ ամեն ժամ տեսնուել և կարևորը անօրինել։

Այս ամենի հետ լուսաւորչական և կաթոլիկ հայերը համաձայնութեամբ յարմար համարեցին ժողովրդի կողմից մի քանի գործակալներ ուղարկել Ախալցխա, որ

գնացողների համար բնակութեան տեղ պատրաստեն քաղաքում և գիւղերում. և ուղարկուեցան Հայերից՝ Շապհի օղլի Պօղոս և մահտեսի Կարապետը, իսկ կաթոլիկներից՝ Լապօղլու Յօհանջանը և նորա քեռորդի Էփրիկեան Գրիգորը, զօրավարի վաւերական թղթով այնտեղի հրամանատարի անուանը և մի ընծայական թղթով կաթոլիկների կողմից քաղաքի ժողովրդի անունով. երբ նոցա ճանապարհ դրին՝ ժողովուրդն էլ սկսաւ ճանապարհ ընկնել:

Մայիսի 15-ին ժողովուրդը սկսաւ հեռանալ իւր սեպհականութիւնից՝ և մինչև յունիսի հինգը դատարկուեցաւ ամբողջ Կարինը, Կարնոյ շրջակայ դաշտը, Դերճանը, Թորթումը, վերին և ներքին Բասենը, Դէքմանը և Խնուսը, և խմբովին ազատադէմ և համարձակ գնում էին իրանց ճանապարհը: Եւ ամեն օր ժողովրդի ճանապարհ ընկնելիս՝ Բանդրատեը մի մի վերակացու էր դնում հետները զինուոր-

ների խմբով, որ տանեն խաղաղ և աներկիւղ հասցնեն մի օրուայ ճանապարհ նշանակած տեղը։ Դորա համար գործը մի փոքր ուշանում էր, որովհետև հարկաւոր էր այլ և այլ տեղերից գաղթող-ներին հաւաքել, ճանապարհ ընկնող տների հաշիւը պահել և ցուցակը զօրավարին հասցնել, որպէս զի նոցա բոլորի համար օրինաւոր կարգադրութիւն անէր և հրամայէր կարևոր զգուշութիւններ գործ դնել, վասնզի բաւականին երկիւղալի էին աւազակաբարոյ քրդերի բնակութիւնները, որոնք Հայաստանի բոլոր լեռնամէջերը գրաւած ունին, և առանց վախենալու բոլոր թագաւորների սպառնալիքներից անպատիժ գործում են ինչ որ ուզում են։ Այսպիսի արկածների առաջն առնելու համար էին ահա՛ այդ տեսակ զգուշութիւնները։ Նոյն իսկ ինքը Բանդրատև զօրավարը չէր յանձն— առնում անձամբ դուրս գնալ քաղաքից՝ իւրաքանչիւր օրուայ չու-

ողներին տեսնելու համար. այլ ինքը մի-
այն սիրտ էր տալիս նոցա որի լինել մի
փոքր ճանապարհի նեղութեանց դիմանա-
լու՝ ապագայ հանգստեան յուսով։ Այս-
քանն էլ մեծ քաջալերութիւն էր մի
այնպիսի ժողովրդի համար, որ յուսոյ և
կասկածի մէջ շփոթուած տատանւում էր։

Երբ ամբոխն առաջին օրը ճանապարհ
ընկաւ, զօրավարը յորդորեց Կարապետ արք-
եպիսկոպոսին, որ շուտով քաղաքից հեռա-
նայ ինքն էլ, որպէս զի ժողովուրդը չը
դանդաղի այլ և այլ սնոտի յոյսերով ու
պատճառաբանութիւններով. և նա նորա
խօսքով մի քանի օր Հասանղալէի վանքում
հանգստանալուց յետոյ յունիսի 3-ին գնաց
դէպի Կարս, և երբ ժողովուրդը հաւա-
քուեցաւ այնտեղ՝ այնտեղից էլ դուրս գնաց
դէպի Ախալցխա։ Արզրում քաղաքում մը-
նացին կաթոլիկներից միայն չորս տուն,
որոնք չը յօժարեցան դուրս գալ այնտե-
ղից, և դարձեալ եօթ տուն, որոնք գնալով

Տրապիզոն, ցանկանում էին խմբով գնալ այնտեղից, բայց տաճիկների տուած յոյսերից ու խոստումներից համոզուելով յետ դարձան այնտեղից իրանց տեղը. Հայերից էլ մնացին մօտ հարիւր, որոնց պարագլուխը Քեօսէ օղլու արապկերցի Համբարձումն էր, մէկ ժիր և գործունեայ մարդ, որոնց վերջին օրը Պօլսից նոր առաջնորդ հասաւ Բարդուղիմէոս վարդապետը, ժողովրդին յետ պահելու դաղթելու դիտաւորութիւնից, բայց ոչինչ օգուտ չունեցաւ։ Իսկ Կարնի շրջակայ գիւղերում խիստ քիչ մնացին թէ հայերից և թէ կաթոլիկներից։ Ճինիս գիւղում, ուր մօտ հարիւր տուն կային, այնտեղի քահանան ճանապարհ ընկնելիս եկեղեցին անգամ կրակ տուեց, որ այլ ևս յետ դառնալու յոյսը չունենան. Նա այնպէս էր զարդարուել զէնքերով, կարծես մի քաջ նահատակ էր պատերազմի համար պատրաստուած։ Բայց պէտք էր տեսնել վերջին օրը, յունիսի 5-ին, թէ ինչ-

պէտ Արզրումից ու գիւղերից ժողովուրդը դունդագունդ խռնվում էր՝ երբ Խանդրատեւը զինուորական հանդիսով քաղաքը յանձնեց Փահլիւլ փաշային, որ Հաճի Հասան փաշայի կողմից եկած էր քաղաքին տիրելու, անցնելով Հասանղալէից: Կարելի է ասել, թէ Կարնոյ դռներից մինչև Հասանղալէ, որ վեց ժամուայ ճանապարհ է ձիով. ամբողջ ճանապարհը բռնուած էր զօրքով, գաղթականներով և նոցա կարաւաններով ու անասուններով: Եւ որովհետև դեռ գիւղերում շատերը կային, որոնք ցանկութիւն ունէին գաղթելու, ուստի Խանդրատեւը թողեց քաղաքի մէջ Քրիստոֆօլօս Վօյնիկով յոյնին, որ տաճիկ լեզուին տեղեակ էր, մասնաւոր հեծելազօրի հետ միասին, և նորա հետ էլ մի քաջ մարդուն՝ Մկրտիչ Թօշօենց անունով, որ պատուած էր հազարապետութեան անուամբ, որպէսզի նոքա մնան մինչև Հաճի Հասան փաշայի գալը և ողջունեն նորան

իւր կողմից ու միանգամայն հաւաքեն չուող ժողովրրդեան մնացած «գկաց մը-նաց» բաներն ու հասցնեն իւր ետեւից։

Այս ժամանակները կարնեցւոց գաղթե-լու միջոցին՝ Պայազիտի Բէուծ զօրավարը դատարկում է իւր ձեռքի տակ եղած գա-ւառները՝ Պայազիտը, Ալաշկերտն ու Տի-ատինը, և յանձնում է օսմանցիներին. և ո-րովհետև նոցա սահմանբաշխութեան երկրին մօտ էր և այնտեղ ժողովուրդը հեշտութեամբ էր փոխադրւում, բոլոր աշխատութիւնը, վերը յիշածին պէս, կարնեցիներին մնաց։

Ժողովրդեան այդ ահագին բազմու-թիւնը տարան Վանանդայ դաշտը Կարս քաղաքի դէմուդէմը, ուր անպակաս էր նոցա տէրութեան խնամքը, որ մարդա-թուով ալիւր էր բաժանում կարօտեալնե-րին։ Գիւղացիներին շուտով տարան նշա-նակած տեղը, որովհետև նոքա սայլեր և անասուններ ունէին, և բացի հացից ու-րիշ ոչ մի տեսակ չէին ծանրաբեռնում

պետութիւնը։ Իսկ քաղաքացիները ստիպուեցան սպասել այնտեղ քիչ թէ շատ, մինչև որ սայլեր կգտնէին և կշարժէին այդքան բազմութիւնը. իսկ սայլերի խիստ մեծ կարօտութիւն կար ոչ միայն ամբոխի բազմութեան պատճառով, այլ և զօրքի ծանրոցի, պատերազմական անօթների ու պատերազմից մնացած բազմաթիւ աւարի համար։ Որոնք ձեռնհաս էին՝ սայլեր վարձեցին և Ախալցխա ուղարկեցին. այսպէս և կարսեցիք էլ դատարկեցին իրանց քաղաքն ու գիւղերը և անցան Ջօրագեալու դաւառն ու Փամբակ, իսկ մընացած կարնեցիները փոքր առ փոքր արքունի ծախքով անցան Գիւմրի աւանը։ Վասնզի դաղթելու գործի ուշանալու պատճառով, և նշանակեալ ժամանակը հասնելուն համար, երբ պէտք է Կարսը օսմանցիներին յանձնէին, այլ ևս հնար չկար ժողովրդեան Արտահանով ու Չըլտըրով ուղարկել, որովհետև Արտահանն է՝

Յոմանցու մասն էր, և Բանդրատեը պատուիրեց նոցա փոխադրել Գիւմրի ռուսաց սահմանը. որտեղից կամաց կամաց թէպէտ շատ երկար ճանապարհով գնան իւրեանց տեղը. և յուլիսի 5-ին, Արզրումը վերադարձնելուց մի ամիս յետոյ, Կարսն էլ յանձնեցին, թողնելով այնտեղ պայմանին համաձայն վերոյիշեալ Վօյնիլովին մինչև կարսեցիների ցորենի հունձը։ Ժողովուրդը երբ հասաւ Գիւմրի, բանակեցաւ Ախուրեան գետի ափի մօտ, որ տաճկերէն կոչւում է Արփաչայ. և մինչև այնտեղ էր Բանդրատեը՝ կաթոլիկներին, որոնք մինչև այդտեղ հասնելը խառն էին հայերի հետ, բաժանեց նոցանից, առանձին բանակետղ և վերակացու տուեց նոցա, որպէսզի դիւրութեամբ կարողանայ ուղարկել նոցա իրանց ցանկացած տեղը։

Կարսի բնակիչները, որոնք բացի գիւղացիներից իբրանք մօտ վեց հարիւր տուն էին, միանգամից միայն չփոխուեցան,

այլ երեք մասի բաժանուեցան, մի մասը գնաց Փամբակու Ղարաքիլիսէ աւանում բնակութիւն հաստատեց, կէսը աշխատեց Գիւմրին քաղաք դարձնել և ոմանք իրանց առաջնորդ Ստեփաննոս արքեպիսկոպոսի հետ ընտրեցին իրանց բնակութեան համար Արագածի կողի մօտ մի գիւղ, որ այժմ կոչւում է Ղփչաղ, ուր գտնւում է 1201 թուին կառուցած մեծաշէն եկեղեցին։ Միևնոյն կերպով և այն գիւղացիները, որոնք Կարսի նահանգից անցան այս կողմը, տարածուեցան կէսը խումբ խումբ և կէսը ցրուեցան մօտակայ գիւղերը մինչև Ապարան. այսպէս նաև Կարնոյ գիւղերից ոմանք. իսկ ուրիշները տեղաւորուեցան Ախալցխայի գաւառներում՝ Ազղուր, Խըրդզ, Ասպաստուման, Ախլքալակ և ուրիշ տեղեր։ Ոմանք էլ հացի առժամանակեայ կարօտութիւնից նեղանալով յետ դարձան իրանց երկիրը՝ օսմանցիներից լաւ ընդունելութիւն գտնելով. սակայն

ընդհանրապէս Կարսը այնքան հաւատարիմ չդտնուեցաւ իւր խոստման մէջ, ինչպէս Կարինն ու Պայազիտը:

Դառնանք այժմ Ախուրեանի ափերին բանակուած կարնեցիներին, որոնք ուշացան ու մօտ երկու ամիս մնացին, որովհետև սայլեր չէին դտնում ճանապարհ ընկնելու համար, վասնզի քաղելու և հերկելու օրերը մօտեցած լինելով՝ ամեն մարդ իւր գործովն էր զբաղուած և մշակների պէտքը աւելացած էր. իսկ տէրութիւնը իրաւունք չունէր բռնութեամբ նոցա սայլերը հաւաքել, վասնզի եկւոր ժողովրդեան փոքր վնասի համար՝ մեծ վնաս պատճառած պիտի լինէր, եթէ սայլերը ժողովելով՝ հունձը ոտնակոխ անէին, ուստի այդ բոլոր դաւառներին վնաս էր: Վաղարշապատ Գիւմրի գտնուող հրամանատարները միխիթարական խօսքերով յուսադրում էին նոցա համբերել մի առժամանակ, մինչև որ Արտաստանից սայլեր հասնէր, ուր վաղ է

վերջանում հունձը. Թէպէտև նոցանից ոչ մի օգուտ չեղաւ, որովհետև նոքա հնձից յետ խմբովին իջնում էին Կողբի գաւառը աղ կտրելու։ Ուստի ովքեր կարող էին սայլեր վարձեցին ու գնացին, իսկ անկարողները մնացին։ Հայերից մօտ հազար վեց հարիւր յիսուն տուն, իսկ կաթոլիկներից հարիւր յիսուն տուն, ընդամենը մօտ հազար ութն հարիւր տուն կարկատած վրանների տակ տարածուեցան ջրի հոսանքի ընդարձակութեամբ, տօթից արևակէզ և անձրևից ողողուած։ Թէպէտ տէրութիւնը չէր դադարում հաց մատակարարել նոցա, աժան էր նմանապէս և ուտելիքը, սակայն գանգատներն ու բողոքները խիստ մեծացան, սոխ ու սխտորի և Եգիպտոսի պտուկների յիշատակը նորոգուեցաւ, պառաւների անէծքներն ու դդչիւնը, որոնց հետևեցան և շատ նախատինքներ ու լուտանք, Մովսէսի երկայնմտութիւն էր հարկաւոր մարդկեղէն անհամբերութիւնը

անվրդով տանելու և միևնոյն ժամանակ նոցա մխիթարելու ու սփոփելու:

Այս օրերում, օգոստոսի 2-ին, հասաւ այդտեղ գաղթական ժողովրդի նոր վերակացու մայիոր Անօսովը, որին յանձնուած էր խնամք տանել Օսմանեան սահմաններից եկած բոլոր գաղթականներին, մինչև հասնեն իրանց տեղերը: Նա շուտ շուտ այցելութիւն գնալով բանակին և քննելով ժողովրդի բոլոր պէտքերը՝ պատուիրեց ամենքին, որ ազատ կերպով ամեն մէկը իր համար տեղ ընտրէ Ռուսաց իշխանութեան մէջ ուր և կամենայ: Երկու հարիւր տան չափ գրուեցան Փամբակ գնալու համար, ոմանք քիչ քիչ ոմանք սայլերով և ոմանք եզներով ու գրաստներով հասան իրանց տեղերը, և ոմանք զետեղուեցան մօտակայ գիւղերը, որ այնտեղ ձմեռը հանգստանան, մինչև քաղաքը կշինուէր. իսկ գարնանը պէտք է ժողովուէին քաղաքում միշտական բնակութիւն հաստատելու համար:

Պասկևիչ սպարապետը բաւական չը համարելով այդ ամենը, որ մանրամասնաբար գիտէր ինքը, ուղարկեց Նոր գաղթականների կառավարութեան համար սահմանած խորհրդականներից մէկին՝ այն է Ծերովբէ արքեպիսկոպոսին, այցելութիւն նորեկ ժողովրդին, անձամբ գննելու նոցա բոլոր պիտոյքները և իրան տեղեկութիւն տալու: Ծերովբէն սկսաւ շրջել բոլոր ժողովրդի մէջ, սկսած Փամբակի կողմերից, ուր կարսեցիքն էին բնակւում, մինչև Գիւմրի, և գննելով ժողովրդի մնացած մասն էլ, եկաւ հասաւ Ախալցխա օգոստոսի 22-ին. երբ այնտեղ հասաւ՝ տեսաւ, որ երկրի կառավարութիւնը խառնափնդոր և կընճռոտած էր՝ հացի կարօտութեան, տների սակաւութեան, և ամենից աւելի հրամանատարի և նորեկ ժողովրդի մէջ եղած անհամաձայնութեան. պատճառով նոր քաղաքի շինութեան առթիւ: Վասնզի Տրեշեռ հրամանատարը մնացել էր անշարժ և

Պասկևիչի հրամանները չէր կատարում, հին քաղաքը թողնելու և նորի շինութեան ձեռնարկելու վերաբերութեամբ, ոչ ոքին չէր թողնում ոչ տուն շինել հին քաղաքում և ոչ կրպակ, որի պատճառով ժողովուրդը նեղութեան մէջ հեծում էր. և չէին իմանում թէ ինչ անեն։ Սերովբէ արքեպիսկոպոսը իրան տուած իշխանութեամբ հոգ տարաւ, հացի համար գանազան տեղեր մարդիկ ուղարկեց և բաւական ցորեն հաւաքեց ժողովրդի համար, իսկ կարօտեալներին արքունի ցորեն բաժանեց. այսպէս նաև անհրաժեշտ բնակարանների վերաբերեալ կարևոր բարեկարգութիւններ արեց և մի առ ժամանակ խեղճերը շունչ առան։ Իսկ քաղաքի շինութեան մասին շատ մտածելուց և խորհրդակցելուց յետոյ՝ նկատելով, որ ժողովուրդը դեռ չէր կարող նոր քաղաքի շինութեան ձեռնարկել, մինչև որ կանգնէին այն ծանր վնասները, որ մինչև այդ ժա-

մօնակ տուժեցին, և որովհետև սպարա-պետի պատուէրը ստիպողական չէր, հրա-մայեց կրպակներ կառուցանել, և աշմ կարճ ժամանակի մէջ հարիւրաւոր կրպակ-ներ շինուեցան, և ժողովրդի ձեռագործը փոքր առ փոքր սկսեց արդիւնք բերել։ Այս բոլորի մասին Սերովբէն գրեց Պասկե-ւիչին և Թիֆլիզ գտնուած կառավարու-թեան ատենին։

Այդ պատճառով քաղաքական կառա-վարիչ Կռուզենցկին ինքը եկաւ քննելու գաղթականութեան դրութիւնը, հոկտեմ-բերի 16-ին եկաւ Ախալցխա քաղաքը, տեսաւ, հարց ու փորձ արաւ, քննեց, ա-մեն բան իմացաւ և ընդունեց բոլոր ժո-ղովրդի թէ եկաւորների և թէ բնիկների խնդիրները։ Այնուհետև հոկտեմբերի 23-ին հանդէս կազմեց նոր քաղաքի հիմնարկու-թեան, որոց հետ նաև հայոց, կաթոլիկաց և ռուսաց եկեղեցիների հիմնարկութեանց, որ գիտող ժամանակին կառուցուին. և

ընդունեց այնտեղ ժողովրդի հնազանդութեան և հաւատարմութեան երդումը։ Այդ ժամանակ Սերովբէ արքեպիսկոպոսը հայերէն լեզուով ատենաբանութիւն արեց, իբրև գոհութիւն առ Աստուած ժողովրդի բարեբախտութեան համար, և քաջալերեց նոցա չվհատուել առժամանակեայ մի փոքրր նեղութիւններից։ Նորանից յետոյ ատենաբանեց թուրքերէն լեզուով Հ. Եփրեմը, որ կաթոլիկների վարդապետն էր, առաջ բերելով հայոց ազգի երբեմն աղէտներն ու այժմեան մխիթարութիւնը։ Երրորդը քարոզեց վրայլների աւագերէցը գոհաբանութիւն վերառաքելով առ Աստուած։

Այդ օրը խնջոյք արեց բոլոր ժողովուրդը։ Այնուհետև Կռուզենցկին սահման դրեց, նար ժողովուրդը հնից անջատելու համար. և նոցա վերակացու նշանակեց Զիլայովին, որ առաջ էլ ժողովրդի կառավարութեան օգնում էր։



## ԳՐՔԵՐ ՂԱԶ. ԱՂԱՅԵԱՆՑԻ

## I

### Թարգմանութիւններ

| | Ռ. | Կ. |
|---|---|---|
| 1) Հաւատարմութիւնը ամեն արգելքների յաղթում է. Փ. Հոֆմանի. 1877 . | — | 40 |
| 2) Խաւարից դէպի լոյս. Ֆ. Հոֆմանի. 1877 | — | 40 |
| 3) Դոն Քիշոտ Լամանշեցի. Մ. Սերվանտեսի. 1878 (սպառուած) . . . | — | 70 |
| 4) Գէորգ Ռոլլեստոն. վէպ. 1879 . . | — | 60 |
| 5) Երրորդ ոսկի. առակ Լակիդէի (պարգեւատրուած Ս. Պ. Բ. Ֆրէօբելեան ընկ. կողմից). 1879 . . . . . . . . | — | 15 |
| 6) Ռոբինզոն (հրատ. Թիֆլ. տպագրական ընկերութեան). 1881. . . . | — | 60 |
| 7) Չեստերտոնի ժառանգը. պատմ. 1882 | 1 | — |
| 8) Ակտէա. տ. Միսօեվայի. 1885 . . | — | 50 |
| 9) Եան Էրնստ Սմօլեար. Ն. Եանչուկի. 1885 | — | 20 |

## II

### Աշխատութիւններ

| | Ռ. | Կ. |
|---|---|---|
| 10) Աղօթատետր. բ. տպ. 1889 . . | — | 10 |
| 11) Կրօնի դասագիրք ա. տ. 1888 . | — | 15 |
| 12) — — բ. տ. երրորդ տպ. 1889 | — | 25 |
| 13) — — գ. տ. երրորդ տպ. 1890 | — | 25 |
| 14) Տօմար և տօնացոյց Հայաստանեայց ս. եկեղեցւոյ. 1890 . . . . . | — | 50 |
| 15) Պատի օրացոյց. ժամանակագրութեամբ. երրորդ տարի. 1891 . . | — | 75 |
| 16) Ծոցի օրացոյց. չորրորդ տարի. . | — | 15 |
| 17) Կարնոյ գաղթը. 1891 . . . . . | — | 10 |

ԳԻՆՆ Է 10 ԿՈՊԷԿ։

